«Պիոներ» ամսագրի հավելված
հոկտեմբերիկների համար



# ՈՎ Է ԻՍԿԱԿԱՆ ԸՆԿԵՐԸ

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Բակում, մորթու կտորի վրա՝ գլուխը թաթերին դրած, քնել էր Բողարը։

— Շուտով տուն կունենաս, Բողար ջան,— ասաց Սոսիկը և ցույց տվեց գետնին թափված տախտակի կտորներն ու հյուսնի գործիքները։

Բողարը բաց արեց աչքի մեկը, ականջի մեկը ցնցեց, մի քանի անգամ պոչը գետնին խփեց ու տեղից վեր կացավ։

— Ափսոս ձեռքեր չունես, թե չէ միասին մեկ-երկու, մեկ-երկու և... տնակդ պատրաստ է։

Բողարը կարծես հասկանում էր իր բարեկամին։ Նա ուրախ-ուրախ թափահարում էր պոչը, հոտոտում տախտակի կտորները։ Մեխերի արկղից նա վախեցած ետ քաշեց դունչն ու փռշտաց։

— Ծակեցիր քիթդ, անպիտան, էնպես էլ հետաքրքրասերն ես, ինչ տեսնես, պետք է հոտոտես,— բարկացավ Սոսիկը, գետնից վերցրեց մուրճն ու սկսեց մեխել։

— Չրխկ-չրխկ, թրխկ-թրխկ,— խփում էր մուրճը։

— Խրռ, խրռ, խրռ,— խռխռում էր սղոցը, հևում, փնչում էր Սոսիկը։

Հանկարծ բակի դուռը բացվեց։ Բակ մտան Սոսիկի ընկերները։

— Էդ ի՞նչ ես անում, Սոսիկ,— հարցրին նրանք։

— Բողարի համար տնակ եմ պատրաստում,— ասաց Սոսիկը։

— Բա տանիքն ո՞ւր է,— հարցրեց Մինասը,— պետք է տանիք էլ պատրաստես։

— Կպատրաստեմ,— ասաց Սոսը։



— Տանիքին անպայման յուղաներկ կքսես, որ չկաթի, — խորհուրդ տվեց Անիկը։

Սոսիկը ոչինչ չասաց։

— Զր՛խկ-թրր՛խկ, չր՛խկ-թրրր՛խկ, — խփում էր մուրճը։

— Խր՛ռ-խր՛ռ, խր՛ռ-խր՛ռ, — խռխռում էր սղոցը։

— Սոսիկ, Սոսիկ, սղոցին մի քիչ նավթ լցրու, չե՞ս տեսնում ինչպես է խռխռում, — լռությունը խախտեց Մինասը։

— Հիմա մատներդ կկտրես, — ծիծաղեց Անիկը։

Այդ ժամանակ ցանկապատի տակից անցավ Արմենն ու ճաղերի արանքից ներս նայեց։

— Է, Սոս, էդ ի՞նչ ես անում։

— Բոզարի համար տնակ եմ պատրաստում։

Արմենն իսկույն բակ մտավ, մոտեցավ Սոսին, վերցրեց տախտակի կտորն ու մուրճը։

Անիկն ու Մինասը միմյանց նայեցին ու գլխիկոր հեռացան։

— Զր՛խկ-թր՛խկ, չր՛խկ-թր՛խկ, — համերաշխ խփում էին երկու մուրճ։



# ՓԻՍԻԿՆ ՈՒ ԾԻՏԻԿԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Ծիտի՛կ, ծիտի՛կ, ինձ լսիր,
Ի՞նչ կա ճյուղին մերկացած.
Մեղք ես, իզուր մի մրսիր,
Իջիր ծառից, արի ցած։

Մենակ եմ ես ու տխուր,
Արի դարձիր դու ինձ հյուր.
Ինչքան կուզես, հատիկ կեր,
Միայն եղիր ինձ ընկեր։

— Չէ՛, փիսո ջան, ցած չեմ գա,
Լավ է այստեղ, վերևում.
Սուտլիկ ես դու, խաբեբա
Աչքերիցդ է երևում։



Նկ. Ռ. ԲԱԲԱՅԱՆԻ

# ԽՌՈՎԿԱՆԻ ԲԱԺԻՆԸ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ



Նկ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ.

Շատ խռովկան աղջիկ է մեր Նազիկը։

— Չէ՛, չեմ ուզում, լավը չի, չէ՛, չեմ ուզում, քիչ է, քիչ... չէ՛, չեմ ուզում այդտեղից...

Ամեն անգամ ահա այսպիսի պատասխան էր տալիս տատիկին։ Շատ հաճախ էլ լաց էր լինում։

— Ը՛, ը՛, ը՛, չեմ ուզում, չեմ, սա չեմ ուզում, նա էլ չէ, սա ի՞նչ անեմ, հլա տես...

Իսկ երբ Նազիկը լաց էր լինում, ախ, տեսնեիք, թե նա ինչպես էր տգեղանում։ Դեմքը և թշերը կեղտոտ, աչքերը թաց, քիթը կարմրած, բերանը ծուռ։ Իսկ ձայնը. վա՜յ, լսել անգամ մարդ չէր կարող։ Ամեն անգամ նրա ձայնը լսելիս՝ տրանջում էր կատուն.

— Ա՜խ, անաշեն, կարծում ես, թե Փափկամազիկը իսկի դարդ չունի՞, որ անճոռնի ձայնդ լսի։ Երեք օր է մուկ չեմ գտել, հակառակի նման կարծես տատիկն էլ ինձ այս օրերին մոռացել է։ Աչքս շատ բան է տեսնում, սիրտս էլ ուզում է, բայց

թե, սսա, Նազի՛կ, գոնե մի օր դու լսած կա՞ս մի չար խոսք, թեկուզ մի բառ, թե անիրավ կատուն Թաքուն այսինչ բանը կերավ։ Ոչ։ Չես լսել և չես էլ լսի։ Ամեն անգամ կատուն Թաքուն զայրանում էր խռովկան Նազիկի դեմ։ Ու մի օր էլ չհամբերեց։ Հենց որ Նազիկը թրնկթրնկաց ու բաժինը մի կողմ հրեց, տատը տրանջալով ափսեն տարավ խոհանոց։

Փափկամազիկը գնաց, Նազիկի բաժինը կերավ ու սրբեց բեղերը, սուս ու փուս իր անկյունը քաշվեց։ Անցավ մի ժամ։

— Դե տուր, տատի,— ասաց Նազիկը։

Տատը վերադարձավ խոհանոցից՝ դատարկ ափսեն ձեռքին։

Փափկամազիկը ամոթից կարմրեց և գլուխը կախ ուզեց փախչել։ Տատը բռնեց.

— Լավ ես արել, Փափկամազիկ, դու մի՛ ամաչիր։ Թող Նազիկն ամաչի. սրանից հետո խռովկաններին բաժին չկա։

# ԲԺՇԿԻ Ծանուցումը

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մեր Շուշիկը
Հանգիստ չունի,
Սանիտարն է
Դասարանի.
Ունի գոգնոց
Ճերմակ, ճերմակ,
Կողքից կախված
Մի պայուսակ.

«Կարմիր խաչը»
Կարած վրան
Եվ ինչ լավ է
Սազում նրան։
Դասարանում,
Իրենց տանը,
Հետևում է
Մաքրությանը...

# ՓՈՔՐԻԿ ԽԱՌԱՏԸ

ՇՈՂԻԿ ՍԱՖՅԱՆ



Դպրոցում, խառատի հաստոցի վրա, որդիս երկաթի մի փոքրիկ դետալ է պատրաստել։ Գրպանից հանելով այդ մասը, նա ցույց է տալիս հղկած կողմը և պարծենում։ Հիշեցի երեխայությունս, ուզեցի ես էլ իմ գիտելիքներով հպարտանալ։ Վերցրի դետալը, զննեցի, մատս քսեցի փայլող կողմին, ստուգելու հարթ լինելը։

— Ի՞նչ ես անում, կժանգոտի՛,— վրդովվեց տղան,— ձեռքդ քրտնած է...

Ախ, այդպե՞ս։ Ուրեմն ես այդքանը չե՞մ հասկանում։

Եվ հանկարծ իմ մեջ խոսեց փոքրիկ, ինքնասեր աղջիկը, որ ոչ մի տղայի ոչինչ չէր զիջում։ Ու ես էլ իմ կողմից նրան ջգրացրի.

— Բայց գիտե՞ս,— ասացի,— պատրաստի դետալի փայլն ու մաքրությունը ստուգելու համար վարպետն այն մաքրում է իր գրպանի թաշկինակով ու նոր թվանշան նշանակում...

Արեգի դեմքին չարաճճի ժպիտ վազեց.

— Այո՛, մայրիկ,— ասաց,— ես այդ գիտեմ։ Հենց նոր... քո մետաքս շարֆով մաքրեցի։

Պե՞տք է ասել, թե ես ինչպես զայրացա ու շփոթվեցի։



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Լուսինն ու դերձակը

(Սերբական հեքիաթ)

Մի անգամ լուսինն ուզեց զգեստ պատվիրել՝ գնաց դերձակի մոտ։

Դերձակը չափը վերցրեց, ու նշանակված օրը լուսինը եկավ զգեստը ստանալու։ Բայց զգեստը շատ կարճ էր, փոքր, շատ նեղ։

— Երևում է սխալվել եմ,— ասաց միամիտ դերձակը։

Եվ նորից լուսնի չափը առավ, ձևեց զգեստը, նստեց կարելու։

Նշանակված օրը լուսինը եկավ։ Զգեստը նորից փոքր էր։

— Էլի սխալվել եմ,— ասաց դերձակը։

Եվ նորից լուսնի չափը առավ, ձևեց զգեստը, նստեց կարելու։

Լուսինը երրորդ անգամ եկավ։ Դերձակը տեսավ՝ երկնքի վրայով գալիս է լուսինը, ավելի մեծ, լայն, քան իր կարած զգեստը։ Ի՞նչ էր անելու խեղճ դերձակը, էլ ճար չկար, փախավ։ Լուսինը փնտրեց իր դերձակին, շատ փնտրեց, չգտավ։

Այդպես էլ լուսինը մնաց առանց զգեստի։

Մշակեց՝ Ս. ԴԱՅԱՋԱՆ

# ԳՐՉՆԱ

Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ



Օ՜ֆ, ինչի՞ նման է, է՜, ամեն օր նո՛ր դաս, ամեն օր տնային աշխատանք: Կարծես ամեն անգամ քեզ դաս պետք է հարցնեն:

Սամվելն այս կարծիքին էր: Նա որոշեց մի օր գոլորց գնալ դասերը չպատրաստած, տնային աշխատանքները չկատարած: Եվ գնաց:

Հնչեց զանգը:

Ուսուցիչը սովորականի պես դասարան մտնելով բարևեց, սովորականի պես բոլորին նայելով ժպտաց ու հանկարծ, հայացքը կենտրոնացնելով գլուխը խոնարհած, հանցավորի պես ընկերների ետևում



## ...կան են...

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

Թաքնված Սամվելի վրա անսովոր մռայլվեց.

— Դու, երևի, Սամվել, տնային աշխատանքդ չե՞ս կատարել,—աչքերը կկոցելով հարցրեց ուսուցչուհին։

— Ե՞ս... ես... տնային աշխատանքը... ես չգիտեի...—մինչև ականջները կարմրելով կմկմաց Սամվելը։

—Հը՛մ։ Տեսնո՞ւմ ես։ Դու չգիտեիր,— ասաց նա ու վերցնելով Սամվելի օրագիրը գրեց՝ «երկու»։

Երբ դասերից հետո Սամվելն անտրամադիր ու հոգնած տուն մտավ, հայրիկի առաջին հարցն եղավ.

— Չլինի՞ «վատ» գնահատական ես ստացել, տղաս։ Հապա մի օրագիրդ տուր տեսնեմ։

Եվ մինչ հայրիկը օրագիրը կստուգեր, Սամվելը ամոթից շիկնած, քրտինքից ջուր դառած շշնջաց.

— Գիտնականն են...



## Արդեն մեծ եմ

Արդեն մեծ եմ ես. գիտե՞ք.
Էլ ինձ փոքրիկ չկարծեք.
Ոտքիս ծայրին թե կանգնեմ՝
Մեր սեղանին կհասնեմ։
Արդեն հայրիկս ինձ էլ
Մեծի տետրակ է բերել.
Ու հետն էլ տուփ մի սիրուն,
Մեջը՝ ներկեր գույնզգույն։
Էլ չարություն չեմ անի.
Էլ իզուր լաց չեմ լինի.
Էլ չեմ ուզի խաղալիք՝
Խնձոր, շնիկ ու տիկնիկ։
Սուսիկ-փուսիկ կնստեմ.
Կնկարեմ. ինչ ուզեմ...

Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

# ԱՐԱՅԻԿԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ









Նկ. ՎԱԶՈՒԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



# Դժվար բառը

Երեխաները թելադրություն են գրում։

Ուսուցչուհին՝ ընկեր Մկրտչյանը արտասանում է բառերը, իսկ երեխաները գրում են տետրակներում։ Գայանեն իր տետրակում արդեն շատ բառեր է գրել և դեռ ոչ մի տառասխալ չի արել։ Բառերը տարբեր են և՛ դժվար, և՛ հեշտ։ Բայց Գայանեն գիտի այդ բառերի ուղղագրությունը, դրա համար էլ գրում է առանց տառասխալի։

Թելադրությունն արդեն վերջանալու վրա է. ընկեր Մկրտչյանը արտասանում է վերջին բառը՝ աշխարհ։

Գայանեն տետրակում արդեն գրել է աշխարհ բառը, բայց հանկարծ երկմտանքի մեջ է ընկնում։ «Ճի՞շտ է արդյոք, թե սխալ»։ «Դժվար բառ է» — մտածում է նա, և որոշում հարևան Խաչիկի տետրակին նայել։

Իսկ նա՞ ինչպես է գրել այս բառը։ Գայանեն նայում է Խաչիկի տետրակին՝ գրված է աշխար։

Գայանեն վերցնում է գրիչը և իր տետրակում հ տառը ջնջում։ Ստացվում է Խաչիկի գրածի նման՝ աշխար։

Մեկ անգամ ևս վերստուգեցեք



բառերը և տետրակները հանձնեք,— ասում է ուսուցչուհին։

Գայանեն վերանայում է բառերը։ աշխարհ բառը դարձյալ նրան անհանգըստացնում է՝ «Ճի՞շտ է, թե ոչ»։ Այս անգամ որոշում է Սուրիկին հարցնել։ Նա ետ է դառնում դեպի Սուրիկը և խնդրում.

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ԲԱԴԻԿՆԵՐԸ





— Ցույց տուր։

Սուրիկը նրան ցույց է տալիս տետրակը. իսկ նա այդ բառը գրել է բոլորովին այլ ձևով. ախուար։

Գայանեն վերցնում է գրիչը և իր տետրակում նույնպես խ և ւ տառերը տեղափոխում. այժմ էլ ստացվում է ճիշտ Սուրիկի գրածի նման՝ ախուար։

Վերջապես Գայանեն տետրակը հանձնում է ընկեր Մկրտչյանին. իսկ առավոտյան նրան հայտնում են. որ այդ չարաբաստիկ մի բառի մեջ միանգամից երկու սխալ է արել։

Միշտ այսպես է լինում. երբ մարդ հույսը իր վրա չի դնում, — ասաց ուսուցչուհին։



Փոխադրություն «Մուրզիլկա»-ից

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

## ՕԳՆԵՑԻՆ ՆԱՊԱՍՏԱԿԻՆ



Տրվում է անվճար «Պիոների» 11-րդ համարի հետ

# Ծաղի



Ա. ԴԱՐԲՆԻ

Առավոտ վաղ.
Մի կաթիլ շաղ.
Ծաղկի վրա
Իջավ խաղաղ։
Երբ արևը
Նրան ժպտաց.
Շաղը ծաղկին
Այսպես ասաց.
Տես՝ արևը
Կանչում է ինձ...
Ասաց, թե չէ՝
Պոկվեց ծաղկից...
Արևի մոտ
Գնաց շաղը։
Ծաղիկն ասաց.
Արի վա՜ղը, արի վա՜ղը...



Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

№ 11 1958 թ.
ՆՈՅԵՄԲԵՐ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# Թաղնի շեփորը

*(Հեքիաթ)*

Ա. ՄԻՏՅԱԵՎ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այս հեքիաթը ձեր իմացածներից չէ և ինչի մասին, որ պատմվում է այստեղ, տեղի է ունեցել ոչ թե ինչ-որ թագավորության մեջ, այլ հենց մեր հողում, երբ ոչ միայն Սիսեռ թագավորը, այլ ընդհանրապես ոչ մի թագավոր չկար, մնացել էին միայն նրանց օգնականները՝ բուրժույներն ու կալվածատերերը։

Մի տղա էր ապրում գյուղում Վասյատկա անունով։ Արդյո՞ք նրանց գյուղն էր ամենաաղքատ գյուղը՝ հայտնի չէ։ Միայն ուռիներ էին աճում այնտեղ՝ կայծակից ծեծված, և հարդե տանիքներով խրճիթներ էին կանգնած՝ գետնին կպած ծուռտիկ ու փոքրիկ պատուհաններով։ Արդյո՞ք ամենաաղքատն այնտեղ Վասյատկան էր՝ նույնպես հայտնի չէ։ Միգուցե որևէ տեղում նրանից ավելի թշվառ երեխաներ էին մեծանում, միայն թե Վասյատկան ման էր գալիս մոր կոֆտայով, կարկատած շալվարը թոկով մեջքին ամրացրած, իսկ ոտքերին պատառոտված փաթաթաններ էին ու տրորված տրեխներ։ Բայց այդ չէր նրա դարդը. Վասյատկան երբեք կուշտ չէր եղել։ Այս էլ չէր նրա դարդը, այլ այն, որ մի սիրալիր խոսք անգամ չէր լսել Վասյատկան ոչ ոքից։

Նա որբ էր և կալվածատիրոջ բատրակը։

Կալվածատիրոջ տունը սարի վրա էր. դա մի մեծ տուն էր սպիտակ քարով, ներկած տանիքով՝ ծլխնելույզներին թառած երկաթե աքլորներով, որոնք պտտվում էին քամուց։ Իսկ դռան առջև ծաղիկներ՝ դեղին ու կապույտ, լճակում՝ ձկներ, բայց ոչ այն տեսակներից, որ լինում են գետակում. դրանք մարդկանցից չէին վախենում ու կարմրավուն պոչերը շարժելով տաքանում էին արևի տակ։ Ինքը՝ կալվածատերն էլ ասես այդ ձկներից լինեի, իսկի

դամորդու նման չէր. ոտները կարճ էին, գլուխը փոքր, իսկ փորը՝ տակառի չափ։ Երբ Վասյատկան նայում էր նրա փորին, գլխի էր ընկնում, թե ինչու էր ինքը սոված։ Այն սպիտակ հացերը, որոնք տեղավորվում էին այդ ստամոքսում մեկ անգամից, Վասյատկայի ստամոքսում չէին տեղավորվի նույնիսկ հարյուր ճաշի ու ընթրիքի ժամանակ։

Արածացնում էր մի անգամ Վասյատկան տիրոջ ոչխարները։ Երեկոյան նա քշեց հոտը դեպի մարագը և ուշ հասկացավ, թե ինչ էր կատարվել։ Այն տեղում, ուր կապում էին աղայի ձիերը, կանգնած են մոտ հարյուր, կամ թե երկու հարյուր ձիեր։ Կալվածատունը անծանոթ մարդկանցով լիքն է։ Որը շինելով է, որը կաշվե բաճկոնով, գլխարկներին էլ կարմիր բանտիկ կա ամրացրած. թրերն են սրում, հարմոն նվագում, խոհարարն էլ ականջներ ունեցող հսկա կաթսայում շիլա է եփում։

Վախեցավ Վասյատկան, բայց փախչել չհասցրեց։ Նրան մի ջահել, շեկ քյաքուլավոր, երկնավուն աչքերով տղա տեսավ, որի սապոգները խթաններ ունեին, մի կողքին թուրն էր կապված, մյուս կողքին՝ արջնած մաուզերը։

— Կա-չկա ծլկել էիր ուզում,— ծիծաղեց նա։— Քո տերը արդեն փախել է, պա՞րզ է, և կարիք չկա, որ դու փախչես։ Գնանք, սալդաթների շիլան համտես անելու...

Սալդաթների շիլայից էր, թե նրանց ուրախ ծիծաղից, բայց Վասյատկան բարեկամացավ այն կարմիր մարտիկի՝ հեծելազորի շեփորահարի հետ։ Նա պատմեց Վասյատկային, թե ինչպես են բանվորները թագավորին քշել, և թե ինչպես են այժմ կռվում կալվածատերերի ու բուրժույների դեմ, սովորեցրեց նրան շեփորել զանազան ազդանշաններ։





Հետո սկսեցին հեքիաթ պատմել, բայց դե, զինվորների հանգիստը կարճատև է։ Կարմիր մարտիկը հրաժեշտ տալով, համբուրեց Վասյատկային և իր շեփորը նրան տվեց, իսկ իր համար հրամանատարից ուրիշը խնդրեց։

— Երբ ուզես իմանալ, թե ես ո՞ղջ եմ արդյոք, չի՞ հնձել ինձ թշնամու գնդակը, առավոտը վաղ հնչեցրու շեփորը և դու կլսես իմ պատասխանը, իսկ եթե չլսես, նշանակում է այլևս իրար չենք տեսնի։— Ասաց այսպես, թռավ ձին ու զիլ շեփորեց։

Սլացավ հեծելազորը թշնամուն խփելու։

Ամեն անգամ, երբ ծագում էր արշալույսը, վազում էր Վասյատկան ցողաթաթախ բացատը և շեփորը դնելով շուրթերին՝ հնչեցնում։ Շեփորը երգում էր զրնգուն ձայնով ու կանչում հեռուներից իր բարեկամին։ Եվ երբ նրա ղողանջները անցնում էին գետից, դաշտից ու անտառից այն կողմ ու դանդաղ մարում, լսում էր Վասյատկան ընկերոջ պատասխանը։ Բայց մի անգամ հեծելազորի շեփողահարը չպատասխանեց։ Վասյատկան սարսափեց։ Նա կարծեց, որ իր բարեկամը մի որևէ տեղում կորցրել է շեփորը։ Բայց Վասյատկան գիտեր, որ այդպիսի բան չէր կարող պատահել. երևի սպիտակ գվարդիական գնդակն էր դիպել կարմիր մարտիկին, կամ թշնամու սուրն էր տապալել նրան։ Նստեց տղան գետնին ու լաց եղավ այնպես, ինչպես երբեք և ոչ մի վիրավորանքից լաց չէր եղել։ Իսկ երբ դադարեց արցունքը թափելուց, վազեց այն կողմը, որտեղից միշտ լսել էր պատասխանը։

Շատ էր վազել, թե քիչ, բայց զգում էր, որ ոտքերն այլևս չեն շարժվում, հոգնել՝ է։ Ընկավ ցած, իսկ բարձրանալու այլևս ուժ չուներ։

«Գուցե վիրավորվել է բարեկամս,— մտածում է Վասյատկան,— գուցե նրա վերքը փաթաթող չկա՛։ Ա՜խ, հարկավոր է շտապել, բայց թե անկարող եմ»։

Դառնացավ սիրտը այդ մտքից, շեփորը՝ ընկերոջ նվերը տարավ շուրթերին ու փչեց։ Եվ հանկարծ զգաց Վասյատկան, որ ուժերը ավելացան, կարծես իսկի էլ չի վազել։

Իջավ երեկոն և ապա աստղազարդ գիշերը։ Վասյատկան շարունակեց իր ճամփան, հենց որ հոգնում էր, փչում էր շեփորը և նորից վազում։

Արշալույսին, երբ արեգակը դաշտի ծայրից երևաց, նա մի բլուր տեսավ՝ ձիերի սմբակներով տրորված։ Բլրի վրա պտտվում էր սև ագռավը։ Քարացավ սիրտը Վասյատկայի։ Նրա առջև, չհնձած դաշտում պառկած էր իր բարեկամը. նա ձեռքերը տարածել էր, շեկ գանգուրները դուրս էին թափվել գլխարկի տակից, իսկ քունքի մոտ մի փոքրիկ օղակով արյուն էր սառել։

Համբուրեց մահացած ընկերոջը Վասյատկան, համբուրեց նրա պաղ ճակատը, ապա վեր կացավ ու շուրջը նայեց։ Թանկ էին վճարել թշնամիները մարտիկի կյանքի համար. նրանցից տասը հոգի փրթված թափված էին սուր թրերից։

Արևն արդեն բարձրացել էր և լուսավորել կանաչ դաշտերը, հեռավոր կապտավուն անտառները։ Քամին սլանում էր բլրի վրայով, օրորում խոտերը։ Վասյատկան բարձրացրեց բարեկամի շեփորը գետնից, դրեց շուրթերին և հնչեցրեց դեպի երկինք։ Երգեց շեփորը տագնապով ու կանչով։ Սև ագռավը թափահարեց ծանր թևերն ու չքացավ, իսկ շեփորի ղողանջները տարածվեցին աշխարհով մեկ։ Նրա մեջ կար ընկերոջ մահվան վիշտը, հպարտություն նրա քաջության համար, կար և՛ վրեժ, և՛ հավատ հաղթանակի նկատմամբ։

Շատ էր շեփորել Վասյատկան, թե քիչ, երբ նրան թվաց, որ դողացին կապույտին տվող անտառները, ճողփացին ալիքները գետերի ու լճերի, որոնց նա տեսնում էր բլրի վրայից։ Ինչ-որ մեկը գալիս էր, շտապով կտրել-անցնելով անտառները, լճերն ու գետերը։ Շուտով արդեն երևաց, որ բոլոր կողմերից դեպի բլուրն են գալիս տղաներ ու աղջիկներ, որը

մեծ է, որը ավելի փոքր, որը տրեխով, որը բոբիկ ու այնպիսի հնամաշ շորերով, ինչպիսին Վասյատկայինն էր։

Ցած իջեցրեց Վասյատկան շեփորը ու աչքերին չէր հավատում։ Մտքովն անգամ չէր անցել, թե աշխարհում այսչափ երեխաներ կան, իրեն այսքան նման։

— Ինչո՞ւ է մեզ կանչել ռազմի շեփորը, — հարցրին նրանք բոլորով միասին և ասես ամպրոպ որոտաց կապույտ երկնքում։

Ոչինչ չասաց Վասյատկան և հայացքով բլրի գագաթը ցույց տվեց։ Այդ ժամանակ առաջ եկավ մի սևահեր, ջինջ աչքերով ու սպիտակ ատամներով տղա, հանեց վրայից ճյութով ծծված գոգնոցը, նետեց կանաչին, ուղղեց թիկունքն ու ասաց.

— Մեր հայրերին օգնելու համար է ռազմի շեփորը կանչել։ Համաձա՞յն եք պատերազմ գնալու...

— Համաձա՛յն ենք, — ձայն տվեց փոքրիկ ու նիհար մի աղջիկ, որի ձեռքերը ուռել էին տիրուհու համար լվացք անելուց։

— Համաձա՛յն ենք, — ձայն տվեց սև ու նեղ աչքերով տղան։

— Համաձա՛յն ենք, — կանչեց մաշված եղջերվամորթուց կարված բլուզով տղան։

— Հա-մա-ձա՛յն ենք, — անցավ որոտը երկրորդ անգամ երկնքով։

— Որ այդպես է, ազդարարիր հավաքը։

Վասյատկան հնչեցրեց շեփորը և հիմա ավելի շատ զարմացավ, քան առաջ։ Նայում է, որ մեկ անգամից նրանց կրծքերը մտրակելով, փամփուշտի ժապավեններ հայտնվեցին, իսկ գլխներին՝ կարմիր աստղավոր գլխարկներ։ Հրաշքը դրանով չվերջացավ։ Բոլոր նրանք, ովքեր կային այդտեղ, զգացին, որ իրենց մի ձեռքում ատրճանակ կա, մյուսում՝ սրած թուր։

Նորից հնչեցրեց Վասյատկան շեփորը, և ահա ամենի տակին մի-մի նժույգ հայտնվեց, որինը՝ նախշուն, որինը՝ սև, որինը՝ աշխետ... ու կանգնած տեղում գետինն են դոփում։ Քամին ինչ-որ տեղից թռավ հասավ ու նրանց երկար բաշերի հետ սկսեց խաղալ։ Կայծակնացայտ փայլատակում էին բարձրացված թրերը, նույնիսկ արևն էլ մթնեց նրանց կապտավուն փայլից։

Ռազմի շեփորը երգեց ահեղաձայն, որոտացին ճամփաները ձիերի սմբակների տակ։ Թշնամուն էր ուզում հասնել երիտասարդ բանակը և հասավ։ Թշնամին դաժան էր և ուժեղ։ Շատ տղաներ ու աղջիկներ ընկան այդ կռվում։ Միայն թե կարճատև էր սպիտակների դիմադրությունը, նրանց բոլորին սրի քաշեցին, բայց ովքեր վախից արդեն մեռել էին նրանց չհասցրին կոտորել։

Երբ մայրամուտին կանաչներին ցող նստեց և ամենից քաջերը հետախուզության գնացին, Վաս-



յատկան փչեց շեփորը։ Հեռվում եղած բոլոր մարդիկ լսեցին այդ ձայնը, հրճվեցին հաղթանակի համար, իսկ հետո հանեցին գլխարկներն ու ասացին.

— Հավե՜րժ հիշատակ պատերազմում զոհված մեր մանուկներին։

Իսկ առջևում երիտասարդ բանակի համար կային նորանոր ճակատամարտեր։ Շատ թշնամի կար մեր հողում այդ ժամանակ։ Կար։ Բայց չքվեց։

* * *

Երբ անցնում է հիմա պիոներական ջոկատը փողոցով, և կամ ճամբարն է արթնանում անտառի եզրին, երգում են անվերջ շեփորները։ Նրանց զուլալ, հանդարտ ղողանջները արծաթե թռչուններին նման ճախրում են դեպի երկինք ու թռչում կապտավուն անտառների, դեղին արտերի, մեծ քաղաքների ու փոքր գյուղերի վրայով։ Նրանք խաղաղ կյանքի մասին են ազդարարում։ Որքա՞ն են այդ շեփորները։ Գուցե հարյուր հազար, գուցե և ավելի։ Դրանցից մեկը, այսինքն այն, որը հեծելազորի շեփորն էր, ո՞ւմ մոտ է արդյոք և կամ ո՞ր ջոկատումն է, հայտնի չէ։ Հայտնի է միայն, որ այդ ռազմական շեփորի կախարդական ուժը անցել է բոլոր շեփորներին։ Եթե հողը հայրենի նորից վըտանգի մեջ ընկնի, նորից անհանգիստ կհնչեն շեփորները և կտանեն տղաներին ու աղջիկներին օգնելու հայրերին։

**Թարգմ. Օ. ՍԱՆԱՀՅԱՆ**

# Աղբյուրներ

ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

*Մեր լեռներից հայրենական*
*Աղբյուրներ են իջնում ցած,*
*Առվակներ են դառնում նրանք*
*Եվ գետակներ սրընթաց։*

*Լույս են դառնում ճանապարհին*
*Ու մտնում են ամեն տուն,*
*Ծարավ ու չոր մեր դաշտերին*
*Կյանք են բերում, խնդություն։*

*Եվ անցնում են այգիներով՝*
*Աշնան բերքից կռացած,*
*Ու ձայնակցում իրենց երգով*
*Այգեպանին ծերացած։*

*Ծաղկեցնում են այգի, պարտեզ,*
*Լայն արտերը ծփացող,*
*Հետո հոգնած ջրվորի պես*
*Ընթանում են դեպի ծով։*

Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ




**Պատմվածքն արժանացել է «Պիոներ» ամսագրի մրցանակաբաշխության երրորդ կարգի մրցանակի**

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Անդնդախոր գետի պղտոր ջրերից վեր, պղնձացած ժայռի կրծքին, ժանտասունկի պես կպած է մի փոքրիկ տնակ։ Հողմածեծ քարաբաշից կախված ահավոր բարձրության վրա կանգուն է դեռ նրա ճաղաշար պատշգամբը։ Տարիները սևացրել են այն, քամիները շարժել են տեղից, խարխլել։ Հին աշտարակցին ձորն է իջնում, թե ջրաղաց գնում, մի պահ կանգնում, նայում է պատշգամբին և դողդոջ շուրթերով մրմնջում։ Աղոթում է ծերը գլորված երեխաների համար, թե՞ անիծում է անցած օրերը, այդ միևնույն է։ Մրմնջում է, լռում, տխրում և գլուխը կախ հեռանում։*

*Մռայլ էր ձորը։ Պղտոր ջրերը խուլ հառաչանքով փախչում, հեռանում էին ափերից։ Դեմնասող քամին հավաքում էր աշնան չոր տերևները, փուչ ընկույզների հետ խառնում չորացած խոտի դեղնած ցողունները, փչում, կուտակում փոսերում, ժայռերի տակ...*

*Այսպիսի օրերին, մենք՝ երեք երեխաներս, նստում էինք փալասով ծածկված թախտին ու նայում պատուհանից, թե ի՞նչպես էր նվում աշնանային քամին...*

*Բարակ անձրև էր մաղում։*

*— Ինչ վատ է, — շշնջում էր Ասոն ու վերմակի ծայրը քաշում ուսերին։*

*Պատուհանի ապակիները կոտրված էին, բաց ճեղքերից ներս էին խուժում ցուրտն ու խոնավությունը։*

*— Մրսում եմ, — մրմնջում էր Ասոն։*

*Մութն իջնում էր գյուղի վրա, տեղ-տեղ վառվում էին ճրագները։*

*— Երգում ենք, — ասում էր Ասոն, և մենք գլուխներս դուրս էինք հանում վերմակի տակից։ Մշուշի ծվեններն անձայն, անշշուկ, թեթև շղարշի նման քաշվում էին լեռները։ Որբերը երգում էին ամեն երեկո։ Երգում էին ու կամաց լալիս։ Եվ երբ լռում էին մեներգողները, խումբը կրկնում էր.*

*«Լե՛ կտե, լե՛, լե՛...*
*Լե՛ կտե, լե՛, լե՛...*
*Լելե կտե, մարում է...»*

*Մարում էր կյանքն ու արևը՝ պատերազմի և գաղթի արյունոտ դաշտերից ու ձորերից հավաքված որբերի։ Երգում էր նաև Ասոն։ Հետո երգում էինք և մենք ու թվում էր մեզ, թե սպասի հոտ ենք առնում։*

*— Ղոի համեմի հոտն է, սպաս են եփել...*

*Երգը լռում էր։ Սպասի հոտը գալիս էր մինչև ուշ երեկո։*

*Ասոն տասնմեկ տարեկան էր, երբ մայրը՝ Նափեղ ձալոն, մահացավ։ Նոկուշը, կարծեմ այդ ժամանակ հինգ տարեկան էր, իսկ Ներսոն դեռ քայլել չգիտեր։ Մոր մահից մի տարի հետո հողին հանձնեցին Ասոյի հորը՝ Մացակ բիձուն։ Փոքրիկները որբացան։ Կիսավեր տան չորս պատերի մեջ մենակ մնացին։ Մի երեկո էլ, երբ նստած սպասում էինք որբերի երգին, ինձ տուն կանչեցին։ Ես չգի-*

տեսի, որ այդ արված էր հատուկ դիտավորությամբ: Առավոտյան միայն իմացա, որ եկել էին Նոկուշին և Ներսոյին որբանոց տանելու, որ Ասոն հուսահատ դիմադրություն էր ցույց տվել՝ կախվել էր Նոկուշի պարանոցից, ճչացել, օգնություն կանչել, բայց դե ի՞նչ կարող էր անել Ասոն: Երեխաներին տարել էին, իսկ իրեն փակել տան մեջ: Երբ ես մոտեցա պատուհանին, Ասոն ընկած էր թախտին և դեռ հեկեկում էր: Ասոն մնաց մենակ: Գիշերը նրա մոտ ոչ ոք չէր քնում: Երբեմն լսում էինք, թե ինչպես վախից ճչում է, ծղրտում:

— Սատանեքը չարչարում են եթիմին,— ասում էր տատս և խաչակնքում:

Առավոտները Ասոն մի տեսակ դիվահարի դեմք էր ունենում. քաղցը, վախը փոխում էին նաև նրա բնավորությունը: Մի երեկո էլ որբանոցում Յերգեցին: Մենք լարված ուշադրությամբ սպասում էինք երգին, բայց երգի փոխարեն լացի ձայներ լսվեցին: Ասոն գունատվեց և սկսեց դողալ:

— Ներսոյիս, Նոկուշիս բան է պատահել,— բացականչեց նա և վազեց Շահազիզենց բակի կողմը: Ես բռնեցի նրա թևից: Իսկ հետո ամեն ինչ պարզվեց: Պատշգամբի ճաղերից մի քանիսը կոտրվել էին, և երկու երեխա այդ ահռելի բարձրությունից ձորն էին գլորվել: Ոտաբոբիկ Ասոն դուրս պրծավ ձեռքիցս և վազեց դեպի «վանաց այգին», որտեղ ժայռից կախված անակում ապրում էին որբերը: Ասոն մենակ չէր. շատերը շտապեցին: Խուճապի մատնված երեխաներից մեկն էլ առուն էր ընկել, խեղդվել: Կես գիշերին Ասոն վերադարձավ՝ Նոկուշի ու Ներսոյի ձեռքից բռնած:

— Չեմ տա,— գոչում էր նա,— թող միասին մեռնենք, չեմ տա...

Այնուհետև ծանր օրեր ապրեցին որբերը:

Տարիներ անցան, մենք էլ տարիների հետ մեծացանք, բաժանվեցինք, իրարից հեռացանք, բայց իրար չմոռացանք: Քսան տարուց ավելի էր, որ ես Ասոյին չէի տեսել և ոչինչ չգիտեի Նոկուշի և Ներսոյի մասին, իսկ երբ նորից Աշտարակ եկա, կարծես ամեն ինչ առաջվանը լիներ. քարոտ քուչեն, բլբլան առուն, դեղձի հոտը...

— Հո գիտես, որ շատերն էլ կռվից տուն չեկան,— բացատրում էր խոսակիցս և հիշատակում ծանոթ ու անծանոթ մարդկանց անունները: Հայկը մեռել է: Զավենց խանութը քանդվեց, ոչ Նունիկ մոքիրը կա, ոչ Նվարդ հոքիրը:

Լսում էի խոսակցիս ու կարոտով նայում այն նեղ քարոտ քուչերին, որտեղ թողել էի մանկությունս:

— Ասոն կա՞,— հարցրի ես:

— Հա, կա: Տնաքանդը մի տուն երեխա ունի:

Այսպես զրուցելով բարձրանում էինք «քարոտ քուչով»: Ես այլևս չէի լսում խոսակցիս: Մեկը մյուսի ետևից կենդանանում էին մտքումս ծանոթ ու մտերիմ դեմքեր:

Բայց հանկարծ մտքիս թելը կտրվեց, երբ խոսակիցս կանգնեց ու ցույց տվեց փողոցի վերևից իջնող, նիհար, կռացած փոստատարի պայուսակն ուսին մի մարդու և ասաց.

— Հեն ա, Ասոն գալիս ա:

Ես շփոթվեցի: Ինձ էր մոտենում համրաքայլ մի ծերունի, երբ նա մոտեցավ, ուղեկիցս կանգնեցրեց նրան.

— Ասո, կարա՞ս ասես էս ով ա...

Ասոն փոքր ինչ կռացավ և ուշադրությամբ նայեց դեմքիս: Հանկարծ նրա աչքերը խոնավացան և առաջվա նման փայլեցին:

— Վայ, Տորք ջան,— բացականչեց, ուսի պայուսակը վար դրեց ու վզովս ընկավ: Քիչ հետո նա կարողացավ միայն հարցնել՝

— Դու՞ ես...

— Ասո ջան,— շշնջացի ես և ամուր, շատ ամուր գրկեցի նրան: Մենք երկար ժամանակ լուռ էինք:





— Ինչքան ես փոխվել,— վերջապես խոսեց Ասոն,— ծերացել ես, ա տնաքանդ։

— Ոչի՛նչ, ոչի՛նչ,— ասացի և ամուր գրկեցի նրան։

— Էս ո՞նց էլավ, Տորք ջան,— ասաց, բաց թողեց ձեռքերը, ետ քաշվեց և առաջվա նման քաղցըր ժպտալով հարցրեց,— հո չե՞ս նեղանում, որ Տորք եմ ասում։ Մի՞տդ ա մեր տանձենին, թալվարը, «Տորք-անգեղ»-ը։ Մինչև հիմա էլ անգիր գիտեմ, ախար դու էիր սովորեցնում։

Տանձենու տակ էինք։ Վերգոն՝ Ասոյի կինը լաց եղավ.

— Եղբայր ջան,— ասաց նա,— միշտ էլ հիշում էինք քեզ, ոչ մի օր էլ չենք մոռացել։

Մեղմ ու հանգիստ երեկո էր։ Վերգոն սփռոցը փռեց կանաչին, հաց դրեց ու գնաց գինի բերելու։ Մենք մնացինք մենակ։ Լուռ էինք։ Եվ իսկապես խոսել չէր կարելի։ Հիշում էինք մեր մանկությունը։ Գուցե Ասոն ավելի սուր և ցավով էր վերապրում, քան ես։

Նայեցի նրա դեմքին և ինձ թվաց, թե երկուսս էլ նույն բանն ենք մտածում։ Հիշում ենք փոքրիկ Նոկուշին։ Կարծես թե, հիմա էլ նա քնած է թալվարի վրա։ Ներսոն լալիս է... Սոված է... Մայրս փեշի տակ բերում է մեզ համար պահած հացի կտորները և տալիս Ասոյին։ Ասոն հացի կեսը տալիս է Ներսոին, Ներսոն լռում է, էլ լաց չի լինում, մյուս կեսը տալիս է Նոկուշին, իսկ ինքը սոված է մնում և սովից քունը չի տանում։ Նստած ենք տանձենու տակ, մութն ընկնում է և Ասոն ասում է.

— Տորք ջան, երգե՞մ... և բարձր ձայնով երգում է։

— Ինչ էլ լավ է երգում եթիմը։ Որբի ձենը քաղցր կլինի,— ասում էին հարևան կանայք,— Շափեղ, աչքդ քոռանա։

— Ի՞նչ ես նոթերդ կիտել,— հանկարծ մտքերս ընդհատեց Ասոն։

— Ոչինչ, Ասո ջան. հենց էնպես,— ասացի ես.

— Տո՛րք ջան, երգե՞մ... հիշում ես, Ներսոն էլ շատ էր սիրում էդ երգը, որ երգում էի՝ քնում էր,— Ասոն սեղմեց շուրթերը, արցունքը լցվում էր կոկորդը։

— Ո՛չ,— ասացի,— մի երգի։ Ես արդեն գիտեի, որ Ասոն Ներսոյին ուսումի էր տվել. Ներսոն գյուղատնտես էր դարձել, տարել էին պատերազմ ու էլ չէր վերադարձել։ Գիտեի, որ կպատմի դըժբախտ քրոջ՝ Նոկուշի մասին։

— Էհ, ի՞նչ անեմ,— հանկարծ բացականչեց նա, կարծես իմ մտքերը շարունակելով և արցունքի կաթիլներն ընկան այտերի վրա։

— Մի՛ երգի,— շշնջացի ես։

Բայց Ասոն ինձ չլսեց. ձեռքի ափով սրբեց աչքերը և մեղմ, շատ մեղմ ձայնով սկսեց.

Լե՛ կուռ, լե՛, լե՛...
Լե՛ կուռ, լե՛, լե՛...
Լելե՛ կուռ՛, մարում է...

Երգում էր Ասոն դառնությամբ ու վշտով և նրա երգի մեջ, մորմոքող ելևէջները նորից տարան ինձ հեռու, մռայլ անցյալը։ Երգո՞ւմ էր Ասոն, թե լալիս էր՝ դժվար էր ասել, իմ առաջ նորից ծառացավ նրա ծանր, տանջալի մանկությունը

Լե՛ կուռ, լե՛, լե՛...

Նա լալիս էր, չէր երգում։ Այլևս հնչյուններ չկային նրա երգում ու հանկարծ խորն ախ քաշեց.

— Ախ՛ Ներսո ջան, ախպե՛ր ջան։

Անցել էր ամեն ինչ, անցել էր որբության ցավն ու վիշտը։ Ամեն ինչ արդեն մնացել էր նրա անցած ճամփին։ Հիմա մնում էր, որ մոռացվեին այդ բոլորը, բայց ո՞վ կարող էր մոռանալ, որ Ասոն մոռանար։ Ամեն ինչ հիշում էր նա և լավ է, որ հիշում էր։



—Պատմում եմ երեխաներիս, ամեն ինչ պատմում եմ։ Թող իմանան նրանք, թե ի՜նչ ծանր տարիներ է ապրել ժողովուրդը։ Ոչինչ չեմ թաքցնում նրանցից, չեմ ավելացնում և չեմ պակասեցնում, ինչ տեսել եմ, առանց այդ էլ չափազանց շատ է և ահավոր։

— Հիմա լավ եմ ապրում, Տորք ջան,— ասաց նա,— տուն ունեմ, այգի ունեմ։ Երեխաներս սովորում են, Վերգոս գլուխներին կանգնած է, ես էլ պաշտոն ունեմ, փոստատար եմ, բայց դե հին ցավը մոռանալ չեմ կարող։ Երեխաներիս պատմում եմ, որ լավ հասկանան, թե հեշտությամբ չենք հասել էս օրվան։

Մենք, երկու ընկերներ, մինչև կեսգիշեր մնացինք հին տանձենու տակ։ Ասոն իմացել էր, որ պատմվածքներ եմ գրում, հանկարծ հիշեց ու ասաց.

— Տո՛րք ջան, մի բան էլ գրիր իմ մասին։

— Ի՞նչ գրեմ, Ասո ջան։

— Գրի՛ էլի մոռացել՞ ես, թե ճանճապանենց ձորում ոնց էինք երգում,—և նա առաջվա նման երգեց՝

Ավել-պակաս շատ մի խոսա,
Դաշնակի տղա,
Իրանչպանն էլ վեր կալան,
Դե Թավրիզ ճղա...

Գրի՛ էլի։ Էն մասին գրի, թե ոնց էինք մեռնում ու չմեռանք... Իմ մասին գրի, Տորք ջան։ Ներսոյիս, Նոկոշիս մասին գրի։

—Ասո՛, քա՛, տուն եկեք,—ձայն տվեց Վերգոն։

Գիշերն անցնում էր, բայց մենք, երկու ընկերներ, դեռ նստած էինք տանձենու տակ։

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՔԱՅԼԵՐԳ

(Շապկի 4-րդ էջում տպագրված երգի տեքստը)

Ահա կրկին դրոշներով
Մենք ելել ենք շքերթի,
Ու հնչում է երգը սիրով
Մեր երջանիկ սերնդի։

Տոնն է այսօր մեր մեծ երկրի
Խիզախության ու սիրո,
Ու քայլում ենք մենք բերկրալի
Պողպատակուռ շարքերով։

Մենք ջահել ենք-մեր երկրի պես
Անպարտելի ու հզոր,
Կյանքն է խնդուն ժպտում միշտ մեզ
Եվ հաղթական և բոսոր։

Օ՛, թող երգը մեր ցնծության
Ողջ աշխարհում տարածվի,
Մե՛րն է կյանքը և ապագան
Ու հաղթանակը վերջին։



Կ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆԱՂՅԱՆԻ

# ԵՐԵՎԱՆԻ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԸ

Մեր թվարկությունից երեք դար առաջ Ալեքսանդրիայի հռչակավոր գրադարանը, որ յոթ հարյուր հազար գիրք ուներ, կրակի ճարակ դարձավ, իսկ գրքերի մնացած մասն էլ ոչնչացավ թշնամիների արշավանքների հետևանքով: Երևանի մատենադարանը այժմ կարելի է համարել հին ձեռագրերի հնագույն թանգարաններից մեկը ամբողջ աշխարհում:

Հին դարերի խորքից, հրի և սրի միջից անցնելով, մեզ են հասել մեր ժողովրդի այնպիսի հազվագյուտ ձեռագրեր, որոնցից չկա մի գիտություն, որ չկարողանա օգտվել: Մեր և հարևան ժողովուրդների պատմությունն է շարադրված այդ ձեռագրերում:

Ամբողջ աշխարհում հաշվվում է շուրջ քսանյոթ հազար հայերեն ձեռագիր, որոնցից 11 000-ը գտնվում է Երևանի մատենադարանում:

Մատենադարանում պահպանվում են հայկական այնպիսի ձեռագրերի մնացորդներ, որոնք համարյա տարեկից են հայ գրերի գյուտին՝ 1500 տարեկան են: Այստեղ ձեռագրեր կան հին Հայաստանում գոյություն ունեցած գրչության գրեթե բոլոր դպրոցներից, որոնց թիվը ավելի քան երեսուն է եղել: Այստեղ նույնիսկ կան Յավա կղզուց և հեռավոր Ֆիլիպինյան կղզիներից ստացված հայերեն ձեռագրեր: Դրանք էլ ունեցել են հայ ժողովրդի ճակատագիրը՝ սփռվել են աշխարհով մեկ, բայց փորձություններին տոկացել, ապրել են ու վերադարձել իրենց հայրենիք: Այստեղ պահվում է Հնդկաստանում 1794 թվականին լույս տեսած «Ազդարար» պարբերականի լրիվ հավաքածուն, պահվում են հայկական այլ հնագույն պարբերականներ ու գրքեր:

Մատենադարանում պահպանվող ամենահին ձեռագիրը 887 թվականին ավելի հին ձեռագրից մագաղաթի վրա արտագրված հայտնի Լազարյան Ավետարանն է:

Մատենադարանի արժեքավոր հարստությունն է 971 թվականին Վանանդում Դավիթ գրչի կողմից արտագրված մի գիտական ժողովածու: Դա թղթի վրա գրված ամենահին ձեռագիրն է Սովետական Միությունում և Եվրոպայում:

Մատենադարանում ձեր ուշադրությունն է գրավում մի ձեռագիր հսկա գիրք՝ «Ճառընտիրը», որ բացված վիճակում հազիվ է տեղավորվում մի սեղանի վրա: Դա աշխարհի ամենամեծ հայերեն ձեռագիրն է, որ գրված է 1205 թվականին Մուշում: Կազմված է մագաղաթե 607 մեծադիր թերթից: Ամեն մի թերթի համար մորթվել է մի հորթ կամ ոչխար և մորթին մագաղաթի վերածվել: Գիրքը մոտ 36 կիլոգրամ քաշ ունի, զարդարված է մանրանկարներով ու զարդանկարներով:





Ջափազանց հետաքրքիր ու հուզիչ կենսագրություն ունի այս ձեռագիրը:

Թշնամու արշավանքների ժամանակ «Ճառընտիրը» մի քանի անգամ հրի ու սրի է մատնվել, «գերեվարվել է» և «գերադարձ» է եղել: Այսպես է գրված գրքի լուսանցքներում, ինչպես կգրվեր մարդու մասին: Ժողովուրդը ծանր փրկագին վճարելով այն գերությունից ազատել է ու հայրենիք վերադարձրել:

Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ այդ ձեռագիրը երկու մասի են բաժանել: Մշեցի մի գյուղացի գրքի կեսը շատ փորձություններից հետո հասցրել է Էջմիածին, իսկ մյուս կեսը՝ գյուղացիները թաղել էին հողում, և փրկել թուրք բարբարոսներից: Մի ռուս զինվորական ձեռագրի՝ հողում թաղված կեսը հանում է ու 1918 թվականին բերում Էջմիածին: Եվ ահա այժմ երկու կեսերը իրար հետ միացած, գերությունից ազատ, երջանիկ «ապրում» են մատենադարանի խաղաղ հարկի տակ:

Գերի ընկնող և ազատվող ձեռագրերի մասին հաճախ ենք կարդում գրքերի լուսանցքներում կամ վերջում:

Մի ձեռագրի հիշատակարանում գրիչը տխրությամբ գրել է.

«Այս գիրքը ես արտագրել եմ 1314 թվականին մոնղոլ խան Հարմանի օրոք, դժվար ու դառն մի ժամանակ, երբ հայ ժողովուրդը խեղդված էր հարկերով, չկար օգնության հույս, չկար ապաստան»:

Մի ուրիշ գրիչ գրում է. «Ցուցամատս չորացել է, ես գիրքն արտագրել եմ միջնամատիս օգնությամբ»:

Ժողովուրդը շատ գրքեր է փրկել գերությունից, սակայն ինչքան մեծ թիվ են կազմում գերությունից չվերադարձած, կրակի ճարակ դարձած կամ անհետ կորած գրքերը: 1179 թվականին Զանգեզուրում սելջուկներն իրենց արշավանքի ժամանակ այրել են մի գրադարան, որտեղ եղել է 10 000 ձեռագիր: Լենկթեմուրը Հայաստանի վրա արշավելիս կարգադրել է հավաքել հայկական հին ձեռագրերը և այրել. դրանց մի մասն էլ փոխադրվել է Սամարղանդ:

Մատենադարանի ամենափոքրիկ գիրքը, որ բաղկացած է 104 մագաղաթյա թերթիկներից, ընդամենը 19 գրամ է կշռում: Այդ գիրքն ավելի փոքր է, քան լուցկու տուփը, գրվել է 1443 թվականին, Օգսենդ գրչի կողմից, Թեոդոսիա քաղաքում: Գիրքը կարդալու համար պետք է խոշորացույց օգտագործել: Այս փոքրիկ գրքույկն էլ փրկվել է մոտ 100 տարի առաջ Երևանում պատահած ջրհեղեղից:

Մատենադարանի հարուստ ձեռագրերի մեջ դուք կհանդիպեք գիտության բոլոր ճյուղերին, հատկապես պատմության, փիլիսոփայության, բժշկության վերաբերող ձեռագրերի: Օրինակ, այդտեղ են պահվում Փավստոս Բյուզանդի, Մովսես Խորենացու, Եղիշեի և ուրիշների գրած գրքերը:

Մատենադարանում ձեր ուշադրությունն է գրավում մի փոքրիկ, կաշեկազմ ձեռագիր: Մագաղաթի վրա մի էջում նկարված է պարսկական զորքը փղերի վրա, մյուս էջում՝ հայկական հեծելազորը, իսկ երկուսի մեջտեղը՝ մարտի տեսարաններ, վիրավորներ, սրեր, նետեր: Սա 451 թվին հայ ժողովրդի պարսիկների դեմ մղած ազատագրական պայքարի պատմությունն է՝ Եղիշեի «Վարդանանց պատմությունը»:



7-րդ դարից մեզ է հասել Անանիա Շիրակացու հնագույն թվաբանական գիրքը, որտեղ իբրև թվանշան գործ են ածվել հայկական տառերը, որովհետև այն ժամանակ արաբական թվանշաններ դեռ չկային: Սա թվաբանության առաջին դասագիրքն է աշխարհում:

Մատենադարանում են պահվում միջնադարի հայ գրականության փարդերը՝ նովելներն ու առակները, 522 հայ բանաստեղծների ձեռագրերը:

Այստեղ պահվում են շատ ուրիշ լեզուներով գրված ձեռագրեր, օրինակ, ուզբեկական մեծ բանաստեղծ Նավոիի բանաստեղծությունների աշխարհում ամենահին օրինակը՝ գրված իր կենդանության օրոք: Հետաքրքիր է արմավենու տերևների վրա հին հնդկերեն գրված մի ձեռագիր:

Համաշխարհային արժեք են ներկայացնում շատ հունական և այլ հեղինակների գործեր, որոնց բնագրերի մի մասն անհետ կորել է և պահպանվել է միայն հայերեն թարգմանությունը:

Մատենադարանում պահպանված բազմաթիվ ձեռագրեր ու արխիվային նյութեր խոսում են հայ-ռուսական կապերի մասին: Ռուսաստանի մասին առաջին անգամ հիշվում է 9-րդ դարում:

15-րդ դարի հայկական երգերում գովերգվում է Մոսկվան և համարվում աշխարհի լավագույն քաղաքներից մեկը:

Հիացմունք են պատճառում Մատենադարանում պահպանված հայկական զարդանկարչության նմուշները: Այստեղ կան հազար տարեկան ներկեր, որոնք չեն կորցրել իրենց սկզբնական թարմությունը և կարծես վրձինից հենց նոր են անցել մագաղաթի վրա: Ուշագրավ են այն ձեռագրերը, որոնք ծաղկազարդել են հայ նկարիչները՝ Սարգիս Պիծակը, Թորոս Ռոսլինը, Մոմիկը և ուրիշները:

Մատենադարանում պահպանված ձեռագրերում հանդիպում են հայկական երաժշտության հնագույն նիշերը՝ խազերը, որոնք դեռ չեն վերծանվել:

Համաշխարհային կուլտուրայի գանձարաններից մեկը հանդիսացող Հայաստանի Պետական մատենադարանից օգտվել և օգտվում են աշխարհի շատ գիտնականներ:

Մատենադարանի տպավորությունների մատյանում դուք կհանդիպեք չին, հնդիկ, անգլիացի, բրազիլացի, ֆրանսիացի, կորեացի և աշխարհի չորս կողմերից այնտեղ այցելության եկած ուրիշ ազգերի ներկայացուցիչների հիացական տողերին: Ֆրանսիացի հռչակավոր գրող Հանրի Բարբյուսը 1927 թվականին մատենադարանի այցելուների մատյանում գրել է. «Ես երջանիկ եմ և զգում եմ, որ հրաշալի ձեռագրերի գրադարանը դիտելուց հետո իմ միտքը հարստացավ»:

Ահա հայտնի պատմաբան ակադեմիկոս Տարլեի կարծիքը.— «Հայաստանի այս հնադարյան գրապահոցը, անջնջելի տպավորություն է թողնում. կանգնած ես դեմ առ դեմ ամենակուլտուրական և պատմական մի ժողովրդի, որը դասական հնադարի ժամանակներից ընդհուպ մինչև ներկա ժամանակները դասվել և դասվում է կուլտուրական ազգերի շարքը. որքան ուրախալի է, որ ժամանակակից հայ սերունդը այսպես սիրով և խնամքով է վերաբերվում իր հոյակապ անցյալին»:

***

Շուտով կավարտվի Մատենադարանի նոր շենքի շինարարությունը: Դա բազալտից կառուցված մի հոյակապ շենք է, որ Քանաքեռ տանող բարձունքից իշխում է Երևանի վրա: Ութ հարկանի այդ շենքը սարքավորվում է հատուկ տեխնիկական միջոցներով, որը հնարավորություն կտա ամառ և ձմեռ պահպանելու միապաղաղ ջերմություն և խոնավություն, որպեսզի հազարամյա ձեռագրերը լավ զգան իրենց ու անվնաս ապրեն: Շենքն ունի դահլիճներ, ընթերցասրահներ, գիտնականների աշխատանքային բազմաթիվ առանձնասենյակներ, սպասարկման սրահ, լաբորատորիա, գրապահոցներ և այլ հարմարություններ: Շենքի առաջ կանգնեցվելու են հայ գրերը ստեղծող Մեսրոպ Մաշտոցի և հայ մեծ մատենագիրների արձանները:






# Գանայի տղան

Մ. ԳՈԴՈՒՆՈՎԱ

Արևմտյան Աֆրիկայում կա մի փոքրիկ երկիր, որը կոչվում է Գանա։

Գանան երկար տարիներ կոչվել է Ոսկյա ափ, իսկ թե ինչո՞ւ Ոսկյա ափ, այդ դուք հիմա կիմանաք։

Վաղուց Գվինեյան ծովախորշ են մուտք գործել պորտուգալացիները, հետո հոլանդացիները, դանիացիները և վերջապես անգլիացիները։ Հայտնաբերելով այդ երկրում չափազանց շատ ոսկի, երկիրն անվանել են «Ոսկյա ափ»։ Զավթիչները այդ երկրի ողջ հարստությունները սկսել են թալանել։ Տարել են ոչ միայն բնական հարստությունները, այլև... մարդկանց։ Տասնյակ հազարավոր սևամորթ ստրուկներ շղթայակապ վաճառվել են Ամերիկայում։

Շատ դառնություններ ու վիշտ է կրել Գանայի ժողովուրդը, բայց երբեք չի դադարել պայքարելուց իր ազատության և անկախության համար։ Եվ նա հասավ դրան. 1957 թվականի մարտ ամսից Ոսկյա ափը դադարեց գոյություն ունենալուց որպես անգլիական գաղութ։

Գանան դարձավ անկախ պետություն։

Այստեղ մենք կպատմենք գանացի սևամորթ տղա՝ Իմորուի մասին, որն ապրում է այդ կիզիչ արևի երկրում, Իմորուի մաշկը շոկոլադի գույն ունի։ Չէ՞ որ Աֆրիկայում մշտական ամառ է, և աֆրիկյան արևի կիզիչ շողերն այրում են անխնա։

Իմորուն կրում է միայն մի կոնքակալ, քայլում է ոտաբոբիկ։ Աֆրիկայում հագուստի անհրաժեշտություն էլ չկա, առանց հագուստի էլ չափազանց շոգ է։ Իմորուն ունի սև գանգուր մազեր։ Նա յոթ տարեկան է, բայց դպրոց չի գնում։ Այդ գյուղում, որտեղ նա բնակվում է, դեռևս դպրոց չկա, բայց, իհարկե, շուտով կլինի և այն ժամանակ Իմորուն կգնա սովորելու, նա մեծ ցանկություն ունի մյուս երեխաների նման գրել-կարդալ սովորել։

Իմորուի խրճիթը կլոր է և ամբողջությամբ պատրաստված է եղեգից, միայն դրսի կողմից ծեփված է կավով։ Խրճիթը պատուհաններ չունի, բայց դրա փոխարեն ունի 2 դուռ, որից մեկը դրսից զարդարված է գեղեցիկ խեցիներով։ Ձողերից պատրաստված տանիքը ծածկված է արմավենու մեծ տերևներով։ Արևադարձային տեղատարափ անձրևների ժամանակ՝ ջուրը այդ տանիքից հոսում է ինչպես հովանոցից և խրճիթ չի լցվում։ Շրջակայքում բարձր, խիտ խոտ, թփուտներ են աճում։

Հսկա արմավենիները տարածելով իրենց երկար, փետրավոր տերևները, պաշտպանում են խրճիթները աֆրիկյան արևի ճառագայթներից։

Դեռ արևը նոր է ծագում, իսկ Իմորուն արդեն զարթնել է։ Քնում է նա հատակին, խոտերից գործված խսիրի վրա, որը վարպետորեն հյուսում է մայրը։

Իմորուն իրեն արդեն տղամարդ է համարում։ Չի կարելի ամբողջ օրը վազվզել և խաղալ երեխաների հետ, պետք է օգնել հայրիկին և մայրիկին։ Վաղ առավոտյան Իմորուն մայրիկի հետ գնում է գետակը ջրի։ Կարծում եք հե՞շտ է գլխի վրա տանել ջրով լի ջրամանը։ Հեշտ չէ, բայց Իմորուն այդ անում է վարպետորեն։

Արմավենու ճյուղերից հյուսված ավելով նա ավլում է խրճիթն ու բակը, որտեղ մայրն արդեն փռում է հացահատիկը՝ ծեծելու համար։

Պետք է օգնել նաև հայրիկին։ Վերցնելով փոքրիկ փայտյա բրիչը, Իմորուն գնում է պլանտացիաները և խնամքով քաղհանում է մոլաբույսերը։ Իսկ մոլաբույսերը աճում են շատ արագ և կարող են ծածկել մանիոկի և յամսի ցանքերը։ Իսկ երբ յամսը հասնում է, Իմորուն ամբողջ օրը քշում է թռչուններին, որպեսզի հասուն բերքը չկտցեն։ Չէ՞ որ յամսի ալյուրից թխում են համեղ բլիթներ և

եփում են չիբու. Իմորուն շատ է սիրում արմավենու յուղով պատրաստված չիբան։

Բայց միշտ չէ, որ հաջողվում է տասը բերք հավաքել, որովհետև հողը մշակում են միայն բրիչի օգնությամբ։ Անգամ լինում են սոված ու անբերրի տարիներ։ Այդպիսի տարիներին սովից չմահանալու համար ստիպված են լինում հավաքել զանազան թրթուրներ ու սպիտակ մրջյուններ և ուտել։ Գյուղում անասուններ չկան։ Կովերն ու ոչխարները ոչնչանում են ցեցի ճանճից։ Այդ ճանճից պետք է զգուշանալ, որովհետև նրա կծածը վտանգավոր է նաև մարդկանց համար։

Գյուղից ոչ հեռու տարածված են արևադարձային անտառները՝ Ջունգլիները։ Իմորուն Ջունգլի է գնում իր հոր հետ միասին։ Անտառ գնալիս հայրն իր հետ վերցնում է նետն ու աղեղը և սուր, կեռ դանակը։ Իմորուն նույնպես ունի այդպիսի փոքր դանակ։

Հայրը քայլում է առջևից, իսկ նրա ետևից զգուշորեն գնում է Իմորուն։ Անտառում կան շատ ակնոցավոր ու թունավոր օձեր, իժեր, որոնց խշշյուն չի կարելի նըկատել և տարբերել խոտ սաղարթից։



Կեղ թվում է, ճյուղեր կամ տերևներ են, իսկ դա թունավոր օձ է, որը կծիկի նման փաթաթվել կամ անշարժ ձգվել է։ Ծառերն այնքան բարձր են, որ կատարները չեն երևում և այնքան խիտ են հյուսվել իրար, որ կարծես գլխից վերև կանաչ տանիք լինի փռված։ Ծառերից ձգվում են ծաղկած լիանները, փաթաթվում են ծառերին, կախվում են ճյուղերից և օձերի նման փռվում գետնին։

Ջարխաներն ու խոտերն այնքան բարձր են, որ Իմորուն ու հայրը ծածկվում են գլխովին։

Դժվար է քայլել այդպիսի անտառում։ Իմորուն հաճախ սայթաքում է, կպչում ծառի արմատներին, կառչում է կախված լիաններից։ Շարժվում են նրանք քայլ առ քայլ, կտրելով հանդիպած ճյուղերն ու թփերը, ճանապարհ հարթելով իրենց համար։

Հայրը Իմորուին սովորեցնում է տարբերել գազանների հետքերը, ցույց է տալիս ուտելու համար պիտանի խոտերն ու արմատները, դեղաբույսերը և զգուշացնում թունավորներից։

Իմորուն տարբերում է ծառերի մեծ մասը։ Ահա հզոր ճյուղատարած և սաղարթախիտ բաոբաբը, որի փչակում ազատ կարող են տեղավորվել Իմորուի 10 ընկերները։ Այստեղ բուսնում են հսկա ակացիաներ, որոնք ունեն կարմիր, գեղեցիկ ծաղիկներ, աճում են մայրիները, երկաթյա և կարմիր ծառերը։

Յուղատու արմավենիների գագաթին, հսկայական փետրավոր տերևների տակ, կախված են դեղին և կարմիր պտուղների ողկույզները, որոնք շատ նման են սալորի։ Այդ պտուղներից յուղ են հանում։ Օճառը, որով լվացվում է Իմորուն, նույնպես պատրաստված է այդ արմավենու պտուղներից։

Իսկ որքա՜ն շատ կապիկներ կան արևադարձային անտառներում։ Ամբողջ օրը ծառե-

րի կատարներին թռչկոտում են պավիանները ու շնագլուխ բաբիանները։

Տարին երկու անգամ կակաոի բերք են հավաքում։ Երբ ողջ գյուղը գնում է պլանտացիաները աշխատելու՝ Իմորուն նրանց հետ վաղ առավոտից մինչև ուշ գիշեր աշխատում է արևի այրող ճառագայթների տակ, օգնում է մեծերին։

Երբ կակաոի պտուղները հավաքված են զամբյուղների մեջ, Իմորուն սկսում է կճպել պտուղները և անջատել նուշի նմանվող ոլոռները։ Իմորուն աշխատում է չափազանց զգույշ, որպեսզի չվնասի դեռևս փափուկ և քնքուշ ոլոռները։ Նրանք օրեր են աշխատում թե՛ մեծերը և թե՛ փոքրերը մինչև կակաոի ոլոռները սևանում են և հասնում, իսկ հետո նեգր-գյուղացիները կակաոի հատիկներով լցված ծանր հակերը գլխների վրա, գնում են գնման կետերը՝ վաճառելու։

Իմորուն շատ ընկերներ ունի, որոնց հետ ազատ ժամերին ուրախ ժամանակ է անցկացնում։ Երբ շոգն իջնում է, նրանք գնում են դեպի գետակը, իրենց հետ տանելով չորացված և մեջը դատարկված դդումներ։ Ինչքա՜ն հետաքրքիր է լող տալ դդումի վրա պառկած, դրա համար պետք է միայն թիավարել ձեռներով ու ոտքերով։

Մթնում է։

Հոգնած, բայց զվարթ Իմորուն տուն է վերադառնում։ Նա չափազանց սոված է, իսկ օրվա մեջ ուտում է միայն մեկ անգամ, այն էլ երեկոյան, երբ մութն ընկնում է։

Երբ ամբողջ ընտանիքը հավաքվում է, նրանք նստում են բակում՝ գետնին և Իմորուն ախորժակով ուտում է յամսից պատրաստված շիլան ու խորոված բանանները։

Հաճախ երեկոները, նստած խարույկի մոտ, հայրը Իմորուին պատմում է արևադարձային անտառների մասին, անցած օրերի մասին, երբ նեգրերին շղթայակապ, նավերի նկուղներում տանում էին հայրենիքից շատ հեռու և վաճառում շուկաներում որպես ստրուկներ։

Արագ իջնում է գիշերը և հազարավոր պայծառ աստղեր են վառվում աֆրիկական երկնքում։

Ձգվելով խսիրի վրա խոր քնում է Իմորուն։

# ԱՇՈՒՆ

Ռ. ՏՈՆՅԱՆ

Այգիներից եկար,
Եկար ոսկի արտից,
Խնդությունով անմար
Ու գույներով անբիծ։

Տերևները գույն-գույն
Թիթեռնիկներ դարձան,
Ու երկնքով կապույտ
Կռունկները անցան։

Շուրջը իջավ մշուշ,
Ճամփին քամին պարեց,
Ու դաշտերին փոշոտ
Բարակ անձրև մաղեց...

Մեր արտերով եկար,
Այգիներով ճախշուն,
Մեր խնդություն անմար,
Մեր սիրելի աշուն։

# ԱՇԽԱՐՀ, որ կառուցված է ԴԱՏՎԵՐՈՎ




**Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

Ամեն ինչ կատարվեց անհասկանալի և տարօրինակ ձևով:

Ասֆալտի վրա կանգնած էր մի մարդատար ավտոմեքենա, որը կարող էր տեղավորել հինգ հոգի:



Մոտեցավ արտազգեստ հագած մի մարդ, շուռ տվեց մի քանի պտույտ և... ձեռքերի վրա բարձրացնելով անհագին թափքն իր գոներով ու լուսամուտներով՝ տարավ, ինչպես մի կարտոնե տուփ:

Ակվարիումի նմանվող մի մեծ ապակե արկղի մեջ դրեցին էլեկտրական շարժիչ: Հետո մոտեցրին ռեզինե խողովակը և արկղը լցրին ջրով: «Շարժիչը կփչանա» անցավ մտքովս, երբ... արտազգեստով մարդը միացրեց հատիչը, ու ջրով ծածկված շարժիչը սկսեց հանգիստ աշխատել:

Ա. ԴՈՐՈԽՈՎ

Ծանր, երկու փթանոց կշռաքարը կապեցին մազից էլ բարակ մի թելով, որի ծայրը անցկացրին առաստաղից կախված ճախարակին ու ձգեցին: Եվ ի՞նչ... հազիվ երևացող թելը չկտրվեց, իսկ իրենից կախված բեռը... բարձրացրեց:

Հետո նույն մարդը գրպանից հանեց մի սովորական քսակ, որտեղից հանելով թաշկինակի պես ծալված մի բան՝ թափահարեց: Նրա ձեռքում երևաց մի թափանցիկ ու թեթև թիկնոց իր վեղարով.

Անփոխարինելի թիկնոց է անսպասելի անձրևի ժամանակ. —ասաց նա,—ջուր» չի՛ անցկացնում, անգամ ամենաուժեղ անձրևի ժամանակ:

Մոտ եկավ մի բեռնատար ավտոմեքենա՝ բարձված արկղներով, որ լեցուն էին կաթով լի շշերով.

— Այստե՞ղ ուրեմն, - հարցրեց վարորդը և սկսեց բեռնաթափել մեքենան: Հանկարծ մի արկղ դուրս պրծավ նրա ձեռքերից և շշերը թափվեցին ուղիղ ասֆալտի վրա: Բայց, զարմանալի բան, շշերը չջարդվեցին, այլ... ցատկոտեցին գնդակների նման:

Ահա թե ինչպիսին էր այն արտասովոր աշխարհը, ուր խմբագրության կողմից եկա՝ ծանոթանալու նոր նյութերի հետ, որոնք պատրաստել էին քիմիայի աշխատողները ինժեներների պատվերով:

Արհեստական մի աշխարհ, որը ստեղծել է ոչ թե բնությունը, այլ մարդը:

## ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՍՈՒՄ Է. «ՉԵՄ ԿԱՐՈՂ»

Հազարավոր տարիների ընթացքում բնությունը մարդուն տրամադրել է այնպիսի նյութեր, որոնք հնարավորություն են տալիս մարդուն իրագործել իր բոլոր տեսակի հնարամտությունները: Այդ նյութերից են փայտը և քարը, կաշին ու բուրդը, մետաղն ու մոմը, և շատ ուրիշ նյութեր: Սակայն եկավ մի այնպիսի ժամանակ, երբ բնությունն արդեն անզոր էր բավարարել մարդու պահանջները: Դա սկսվեց մեր դարի առաջին կեսից:

Մարդը որոշեց՝ թռչել ավելի արագ, քան ձայնը, հասնել մոլորակներին, սուզվել օվկիանոսների հատակը: Մարդը ցանկացավ պատրաստել տաք մորթիներ, գեղեցիկ և հանրամատչելի գործվածքներ, որոնք բացի լավորակ լինելուց՝ ձեռք բերվեին էժան գնով:



Եվ ահա մարդը որոշեց իր օգտին ծառայեցնել ատոմի խորհրդավոր ուժերը:

Պարզվեց, որ այս բոլոր ձեռնարկումներն իրագործելու համար



մոլեկուլների կառուցվածքը տարբեր է:

Այդ իմաստով ատոմները կարելի է համեմատել տառերի հետ, որոնց քանակը այնքան էլ շատ չէ, բայց ամսագրի այս էջը, մյուս էջերը և ընդհանրապես բոլոր գրքերի էջերը լցված են այդ միևնույն տառի տար-

բնության տրամադրած նյութերն անբավարար են: Հարկավոր են այնպիսի նյութեր, որ բնության մեջ չկան. օրինակի համար՝ ձուլվածք, որը չծակվի գնդակից, բայց լինի ապակու պես թափանցիկ և կարտոնի պես ճկուն: Հարկավոր է այնպիսի մի քար, որ գրանիտից ամուր լինի, բայց չսուզվի ջրի մեջ: Հարկավոր են գործվածքներ, որոնց համար կարիք չզգացվի պահել միլիոնավոր գլուխ ոչխարներ:

Մի խոսքով հարկավոր է այն, ինչ մինչև օրս գոյություն չի ունեցել բնության մեջ, նյութեր, որոնց մի նո՛ր ձևով պետք է ստեղծել:



## ՄԱՐԴԸ ՏՆՕՐԻՆՈՒՄ Է ՄՈԼԵԿՈՒԼԻ ՎԻՃԱԿԸ

Աշխարհում գոյություն ունեցող բոլոր նյութերը կազմված են անգամ ամենաուժեղ մանրադիտակով չերևացող մասնիկներից, որոնք կոչվում են ատոմներ: Փոշու ամենափոքրիկ հատիկի մեջ ատոմների թիվը հասնում է միլիարդների:

Ատոմի տեսակները այնքան էլ շատ չեն, հազիվ անցնում են հարյուրից. էլ որտեղի՞ց են առաջացել այն անհամար նյութերը, որոնք այնքան որոշակի տարբերվում են միմյանցից: Դա բացատրվում է հետևյալ ձևով. բոլոր նյութերի մեջ ատոմները խմբավորված են իրենցից ավելի մեծ մասնիկների՝ մոլեկուլների մեջ, բայց տարբեր նյութերի մեջ մոլեկուլ կազմող ատոմների քանակը, տեսակը և դասավորությունը տարբեր են: Այդ տարբերությամբ է պայմանավորվում նյութերի բազմազանությունը՝ ամուր են նրանք, թե փափուկ, թափանցիկ են, թե անթափանց, քաղցր են, թե թթու և այլն...

Ճարպը և բամբակը, շաքարը և քացախը ստացվում են միևնույն ածխածնի, ջրածնի և թթվածնի ատոմներից, բայց երբեք վերոհիշյալ նյութերը իրար հետ չենք շփոթում, չենք շփոթում նրա համար, որովհետև նրանց

բեր կապակցություններից կազմըված բառերով, հետևապես տարբեր են այդ բառերի իմաստը, և դրա համար էլ երբեք չենք շփոթում մի գիրքը մյուսի հետ:

Աշխարհում պատահում ենք այնպիսի նյութերի, որոնց մոլեկուլները պարզ են, բաղկացած ընդամենը մի քանի ատոմներից. օրինակ՝ ջրի մոլեկուլները կազմըված են երեք ատոմից, որոնցից մեկը թթվածնային է, իսկ երկուսը՝ ջրածնային: Բայց կենդանի բնության նյութերի մեծ մասը կազմված են անհամեմատ մեծ և բարդ կառուցվածք ունեցող մոլեկուլներից: Այդ մոլեկուլ-հսկաները կազմված են տասնյակ և նույնիսկ հարյուրհազարավոր ատոմներից, որոնք միմյանց կապակցված են նուրբ

շղթայով: Բարդ կառուցվածք ունեցող մոլեկուլների գաղտնիքը առաջին անգամ հայտնաբերել է ռուս մեծ գիտնական, Կազանի համալսարանի պրոֆեսոր՝ Ալեքսանդր Միխայլովիչ Բուտլերովը: Դա եղավ դեռևս անցած դարի երկրորդ կեսին: Թեև գիտնականները դեռ այն ժամանակ էլ կարողացել են տարբեր նյութերը քայքայել առանձին մասերի, բայց և այնպես երկար ժամանակից հետո միայն մարդկանց հաջողվեց մոլեկուլը քայքայելուց բացի, վերակազմել նոր, ավելի մեծ մոլեկուլներ: Դա այնքան էլ



հեշտ գործ չէր: Երբեմն մոլեկուլի մասնիկները միմյանց մոտեցնելու համար պահանջվում է գործադրել մի քանի հազար մթնոլորտ ճնշում: Եվ որպեսզի այդ մասնիկները հասնեն իրար ու միանալով կազմեն մի ամբողջություն՝ երբեմն հարկավոր է լինում մի քանի հարյուր աստիճան ջերմություն: Պարզ է, որ մարդիկ մինչև չսովորեին ստեղծել այդպիսի հսկայական ճնշում, չստանային այդքան բարձր ջերմաստիճան և չունենային համապատասխան սարքավորումներ, իհարկե, նրանք ոչ մի արդյունքի չէին հասնի: Իսկ երբ գիտնականները հաղթահարեցին այդ դժվարությունները՝ զարմանքով նկատեցին, որ բավական է միայն փոքր ինչ փոփոխել մոլեկուլի կառուցվածքը, ամբողջապես նյութի հատկությունը փոխվում է: Իսկ եթե այդպես է, ուրեմն նյութի հատկությունը կարելի է փոխել ըստ ցանկության:

Եվ ահա քիմիկոսներն սկսեցին արտասովոր փորձեր կատարել: Նրանք սկսեցին բնության ստեղծած մոլեկուլը մասնատել, դեն գցելով անպետք խառնուրդները և նորից միացնել՝ ուզած ձևով:

Այսպիսով գիտնականները լուծեցին անհնարին թվացող խնդիրը: Նրանք սովորեցին ստեղծել բոլորովին նոր նյութեր, որոնք մինչև այդ գոյություն չունեին բնության մեջ, իսկ գիտնականներից հետո այդ սովորեցին անել նաև ինժեներները:










ՅՈՒ. ՊՈԴԿՈՎ



*Մի վարպետ իր համար նոր տուն է կառուցում և բարեկամներին հրավիրում խնջույքի: Հյուրերը նայում են և հիանում. տուն չէ, այլ պալատ: Տանիքը՝ բարձր, դռները՝ փորագրված, սենյակների կահույքը՝ հյուսած, գեղեցիկ և հարմարավետ, հատակին՝ տաք խսիրներ, փոքրիկ սեղանների վրա՝ գրքեր, երաժշտական գործիքներ, ծաղկամաններ: Եվ այս բոլոր իրերը թեթև են, դիմացկուն, գույնզգույն երանգներով:*



*Հյուրերը հարցնում են.*

*— Ինչի՞ց է կառուցված տունը:*

*— Չժունգզիից,— պատասխանում է տանտերը:*

*— Իսկ կահու՞յքը:*

*— Չժունգզիից:*



*— Իսկ խսիրնե՞րը, ծաղկամաննե՞րը, գրքե՞րը, երաժշտական գործիքնե՞րը:*

*— Բոլորը չժունգզիից են:*

*Այնուհետև մատուցվում են բազմատեսակ նախաճաշեր, քաղցրեղեններ, խմիչքներ: Հյուրերը ուտում, խմում են և գովում.*

*— Երևի այս բոլոր ուտելիքնե՞րն էլ չժունգզիից են:*

*— Դուք ճիշտ գուշակեցիք,— հաստատում է տանտերը:*

*— Այդ ի՞նչ հրաշալիք է, որ նրանից կարելի է տուն կառուցել և ուտելիքներ պատրաստել, խսիրներ հյուսել և սրինգներ պատրաստել:*

*Տանտերը բաց է անում պատուհանը և ցույց տալիս այգում աճած բամբուկը:*

*Սա չինական մի հինավուրց պատմություն է, բայց այստեղ ոչ մի չափազանցություն չկա:*

*Բամբուկը (չինարեն «չժունգզի») իսկապես, որ հրաշալի նյութ է, որից կարելի է պատրաստել հարյուրավոր ամենատարբեր տեսակի իրեր և մթերքներ: Բամբուկը լայնորեն տարածված է հարավ-արևելյան Ասիայի երկրներում և Մալայան Արշիպելագում, հարավային Ամերիկայում, Աֆրիկայում և Ավստրալիայում: Գիտնականները հաշվում են բամբուկի մինչև երկուհարյուր տարբեր տեսակներ: Բամբուկի շատ պուրակներ կան Չինաստանի հարավային նահանգներում: Բամբուկը շատ արագ է աճում. նրա շիվը երբեմն մի ժամում մի սանտիմետր երկարում է: Բամբուկի յուրաքանչյուր տնկին հողից մեծ քանակությամբ ջուր է դուրս քաշում: Չժունգզիի այս հատկությունը լայնորեն օգտագործվում է Չինաստանում: Տնկելով ճահճուտ տեղերում՝ չինացիներին հաջողվում է մեծ քանակությամբ ճահիճներ չորացնել: Բամբուկի նուրբ, մատ-*



ղաշ տնկիները ծառայում են որպես մսեղենից և ձկնեղենից պատրաստված ճաշերի գերազանց համեմունք: Ուտելիքների մեջ օգտագործվում են նաև բույսի մյուս մասերը: Բամբուկի սերմերից, որ գարու հատիկ են հիշեցնում, գինի են թորում, ցողունների փափուկ, ներքին շերտից բամբուկի շաքար են հանում, որից խմիչքներ են պատրաստում: Չժունցզիի կեղևը շատ հարուստ է կայծքարահողով և օգտագործվում է մի շարք դեղեր պատրաստելու համար: Բամբուկի մատաղ և բարակ ցողուններից չինական վարպետները կարողանում են պատրաստել ամենատարբեր տեսակի իրեր՝ թեթև և հարմար կահույք, սայլակներ, զամբյուղներ, տակառներ, վարագույրներ, ատրճաններ, պարաններ, ավելներ, պայուսակներ, փազաններ, լապտերներ, գլխարկներ, անձրևանոցներ և շատ այլ բաներ: Եվ թեև բամբուկը, ինչպես գարին ու հաճարը, պատկանում է հացաբույսերի ընտանիքին, նրա մի քանի տեսակների բարձրությունը հասնում է 30-40 մետրի, թեև հաստությունը 30 սանտիմետրից չի անցնում:

Այդպիսի հսկաների ցողուններն ավելի շուտ նման են ծառերի բների, քան թե ծղոտի: Շնորհիվ բնի խողովակայնության, բամբուկը շատ դիմացկուն է և միաժամանակ ճկուն: Բամբուկը հեշտությամբ կարելի է ծռել, բայց շատ դժվար է կոտրել, այդ պատճառով էլ հրաշալի շինանյութ է հանդիսանում:

Չինաստանում կատաղի Մինցզյան գետի վրա 320 մետրանոց մի կամուրջ է գցված: Անսովոր մարդը սարսափով է նայում նրան. չափազանց անհույս են թվում բամբուկի մանրաթելից հյուսված թոկերը, որոնց վրա կախված են ամբողջ սարքավորումը և ծածկի թեթև ձողերը: Բայց կարելի է համարձակ անցնել գետը, այս բամբուկե կամուրջը հուսալի ծառայում է մարդկանց արդեն մի քանի հարյուրամյակ: Այդպիսի առկախյալ կամուրջներ շատ կան Չինաստանի լեռներում:

Բամբուկից կառուցում են ոչ միայն կամուրջներ, այլև տներ, կառուցվածքներ: Յունանի նահանգի խուլ լեռներում գտնվում է չինական ճարտարապետության մի հրաշալի հուշարձան, այսպես կոչված բամբուկյա տաճարը: Նրա բոլոր տաղավարները, որոնք զարդարված են հրաշալի քանդակներով, պատրաստված են բամբուկից:

Մեր օրերում ամբողջ Չինաստանը ծածկըված է նորակառույցների շինարարական փայտամածներով: Ի դեպ, շինարարական փայտամածների համար նույնպես դժվար է գտնել ավելի հարմար շինանյութ, քան բամբուկը: Ֆաբրիկաների, գործարանների, բնակելի տների կառուցման համար պահանջվում է հսկայական քանակությամբ դիմացկուն և էժան շինանյութ: Եվ այստեղ չինական շինարարներին օգնության է գալիս բամբուկը: Այժմ բամբուկը սերտորեն կապված է նաև բետոնի հետ, փոխարինում է թանկարժեք երկաթին: Բամբուկի ցողունները վերամշակում են գոլորշիով և ներծծում խըտացնող ներկով, որը և բարձրացնում է նրա դիմացկունությունը: Այնուհետև նրանից հիմնակմախք են պատրաստում և ցեմենտով պատում: Նոր շինանյութը՝ բամբուկաբետոնը իր դիմացկունությամբ չի զիջում երկաթբետոնին, բայց կրկնակի էժան է նրանից:

Նյութերի վերամշակման ժամանակակից ֆիզիկական և քիմիական միջոցները բացում են բամբուկի օգտագործման նորանոր հնարավորություններ: Չինական գիտնականներն ու շինարարներն ասում են, որ մարդիկ չժունցզիից վերցրել են դեռևս ոչ այն բոլորը, ինչ նա կարող է տալ:



# ԴԱՄՈԿԼՅԱՆ ՍՈՒՐ

Հազարավոր տարիներ առաջ Հին Հունաստանում ապրում էր Դիոնիսիոս անունով մի թագավոր: Նա չափից ավելի անգութ էր և անարդար իր ժողովրդի հանդեպ: Դրա համար հպատակներից ստացել էր Բռնապետ անունը:

Դիոնիսիոս Բռնապետն ուներ մի հիանալի պալատ: Պալատում նրան սպասարկում էին բազմաթիվ ծառաներ:

Մի օր Դիոնիսիոս Բռնապետին հյուր եկավ իր բարեկամ Դամոկլեսը: Նա տեսնելով Բռնապետ թագավորի հարուստ և նախանձելի կյանքը՝ ասաց.

— Ինչքա՜ն երջանիկ և ուրախ պետք է լինես այստեղ, որովհետև դու ունես աշխարհի այն բոլոր բարիքները, որ մարդ արարածը կարող է ցանկանալ կյանքում:

— Գուցե դու շատ կուզենայիր իմ փոխարեն թագավոր լինել,—ասաց Բռնապետը:

— Ոչ, ոչ, այդ չեմ ուզում ասել, ո՛վ թագավոր,—ասաց Դամոկլեսը,—բայց եթե ես քո հարստությունն ու հաճույքներն ունենայի միայն մի օրով, դրանից ավելի մեծ երջանկություն չէի ցանկանա կյանքում:

— Շատ լավ,—ասաց Բռնապետը,—դու կունենաս քո ուզածը:

Այսպես ուրեմն, հաջորդ օրը Դամոկլեսը առաջնորդվեց Դիոնիսիոսի պալատը: Դամոկլեսը փառավոր կերպով բազմեց խրախճանքի դահլիճում պատրաստված ճոխ սեղանի շուրջը: Նա բազմած փափուկ բարձերի վրա, զգում էր, որ աշխարհի ամենաերջանիկ մարդն է:

Բայց երջանիկ Դամոկլեսը հանկարծ աչքերը բարձրացրեց դեպի առաստաղը: Եվ ի՞նչ... Իր գլխի վերև ձիու մի մազից կախված էր մի հսկա սուր և տատանվում էր: Ի՞նչ կլիներ իր վիճակը, եթե ձիու մազը հանկարծ կտրվեր...

Երջանկության ժպիտը հանկարծ սառեց Դամոկլեսի շուրթերին, դեմքը գունաթափվեց մոխրի նման, ձեռները սկսեցին դողդողալ: Եվ դադարեց ուտել-խմելը, էլ հաճույք չէր զգում անուշ ու բերկրալի երաժշտությունից:

— Հը՛, քեզ ի՞նչ պատահեց,—հարցրեց Բռնապետը:

— Սո՜ւրը, սո՜ւրը,—աղաղակեց Դամոկլեսը սարսափած: Բայց նա չէր համարձակվում տեղից շարժվել:

— Այո՛,—ասաց Դիոնիսիոս Բռնապետը,—գիտեմ, որ քո գլխին կախված մի հսկա սուր կա, որ ամեն րոպե կարող է ընկնել: Բայց ինչո՞ւ է քեզ այդքան սարսափեցնում այդ սուրը, երբ մի օրվա համար է: Իսկ ես ամբողջ կյանքումս եմ այսպիսի մի սուր ունեցել իմ գլխի վերև: Կյանքիս ամեն մի րոպեն սարսափով է անցել, իսկ ձեզ թվում է, որ ես աշխարհի ամենաերջանիկ մարդն եմ:



— Թո՛ղ ինձ, թո՛ղ գնամ,— ասաց Դամոկլեսը պաղատագին.—ես այժմ տեսնում եմ, որ ես չարաչար սխալվել եմ: Հարուստն ու հզորը այնքան էլ երջանիկ չեն, ինչպես երևում է արտաքուստ: Խնդրում եմ, թող ինձ, որ վերադառնամ իմ հայրենի տունը, լեռներում գտնվող իմ փոքրիկ ու համեստ խրճիթը:

Այսպես, դրանից հետո Դամոկլեսը իր կյանքի ամբողջ տևողության ընթացքում էլ երբեք չձգտեց լինել հարուստ կամ թագավոր, նույնիսկ մի րոպեով, սակայն այստեղից էլ առաջացավ «Դամոկլյան սուր» արտահայտությունը, որ գործածվում է մինչև օրս: Ասում են. «Վտանգը Դամոկլյան սրի նման կախված է այսինչի կամ այնինչի գլխին»:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Ռազմի շեփորը— Ա. ՄԻՏՅԱԵՎ . . . . . 1
2. Աղբյուրներ— Կ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ . . . 4
3. Իմ ընկեր Ասոն— Վ. ԱՐԱՄՅԱՆ . . . . . 5
4. Երևանի մատենադարանը— Կ. ՍՏԵՓԱՆՅԱՆ . . . . 9
5. Դանիացի տղան— Մ. ԳՈԴՈՒՆՈՎԱ . . . 12
6. Աշուն— Ռ. ՏՈՆՅԱՆ . . . 14
7. Աշխարհը, որ կառուցված է պատերով— Ա. ԴՈՐՈԽՈՎ . . . . . 15
8. Ձմունցգի— ՅՈՒ. ՊՈՊԿՈՎ . 18
9. Դամոկլյան սուր . . . . 20
10. Ժամանց
11. Հոկտեմբերյան մայլերգ— Ն. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Շապիկը՝
Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված հոկտեմբերիկների համար

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки. № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:
ՎՖ 08702. Պատվեր 1154. Տպաքանակ 5500: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 18/XI 1958 թ. Գինը 2 ռ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:





## ՍԱՀԱԴԱՇՏԸ



*Պիոներները դպրոցի բակում սահադաշտ էին պատրաստել և նրա չորս անկյուններում կանգնեցրել էին ձյունե մարդուն: Բայց սահադաշտը փոքր էր: Երեկոները այնքան մարդ էր հավաքվում այնտեղ, որ հնարավոր չէր լինում սահել: «Պետք է մեծացնել սահադաշտը», ասաց ջոկատավարը: «Բայց ինչպե՞ս, միթե պետք է քանդենք արձանները», զարմացան երեխաները: «Ոչ, մենք կարող ենք այնպես անել, որ առանց արձանները տեղից շարժելու, դաշտը մեծանա ուղիղ երկու անգամ և ունենա քառակուսի ձև,—ասաց ջոկատավարը:—Ով կարող է ասել, թե ինչպես պետք է այդ անել»:*

*Երեխաները մտածեցին և գտան ելքը:*

*Իսկ դուք կարո՞ղ եք ասել, թե ինչպես կարելի է վարվել:*



## ԳԵՏԵՐ

Աշխատեք հարցերի պատասխաններով լրացնել վանդակները:

1. Գետ ՍՍՌՄ-ում, 2. Վոլգայի վտակը, 3. գետ, որի վրա գտնվում է Փարիզը, 4. Եվրոպայի ամենաերկար գետը, 5. աշխարհի խոշորագույն գետերից, 6. գետ Ամերիկայում, 7. գետ Եվրոպայում, 8. գետ, որի անունով կոչվում է Բելգիայի գաղութը, 9. գետ Իսպանիայում, 10. Ազովի ծովը թափվող գետ, 11. գետ Իտալիայում:

Առաջարկ՝
Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ




## Պատասխանում ենք

**«Պիոներ» № 10**

**ՄԵՐ ՈՂՋՈՒՅՆԸ.**

| | | | | |
|---|---|---|---|---|
| „ԿՈ 23 | ՄԵ 6 | ՐԻ 19 | ՏՄ 2 | ԻՈՒ 15 |
| ԹՅ 10 | ԱՆ 18 | ՊԱ 1 | ՆԾ 14 | ԱԼ 22 |
| ԻՏ 17 | ՈՆ 5 | ԻՆ, 13 | ՊԻ 21 | ՈՆ 9 |
| ԵՐ 4 | ԱԿ 12 | ԱՆ 25 | ՈՂ 8 | ՋՈՒ. 16 |
| ՅՆ 11 | ՋԵ 24 | ՐՄ 7 | ԱԳ 20 | ԻՆ“ 3 |

**ԵՐԵՔ ՀԱՎԱՍԱՐ ԽՈՒՄԲ.**

—Առաջին խմբից երկրորդն է տեղափոխվում 7 քար: Ապա երկրորդ խմբից երրորդը՝ 6 քար: Դրանից հետո երրորդ խմբում ստացված 12 քարերից 4-ը տեղափոխվում է առաջին խումբը: Բոլոր խմբերում էլ լինում է ութական քար:

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ

*Կարո՞ղ եք այս սկավառակը յոթ ուղիղ գծերով (կենտրոնից դեպի եզրերը) բաժանել հավասար մասերի այնպես, որ ստացվեն տառեր և դրանցով կարդացվի հայ մեծ կոմպոզիտորի անունը:*

Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

